Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 8 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 37, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։



## ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՕՐԸ

1948 թվականի մայիսի 9-ին Սովետական Միության աշխատավորները և ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը կնշեն երկրորդ համաշխարհային պատերազմում ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած պատմական հաղթանակի օրը, պատերազմ, որը վերջացավ գերմանա-ֆաշիստական զավթիչների և ճապոնական իմպերիալիստների լիակատար ջախջախումով։

Նախապատերազմյան տարիներին իմպերիալիստական երկրների ռեակցիոն շրջանները մեծ հույսեր էին դնում ֆաշիստական Գերմանիայի վրա իբրև այն ուժի, որն ընդունակ էր լուրջ հարված հասցնելու Սովետական Միությանը։ Անգլիայի, Ֆրանսիայի և ԱՄՆ-ի կառավարող շրջաններն իրենց քաղաքականությամբ գերմանական ագրեսիան ուղղում էին Սովետական Միության դեմ։ Այդ քաղաքականության նպատակն էր մեկ կողմից՝ թուլացնել Սովետական Միության հզորությունը, մյուս կողմից՝ ազատվել հա-





մաշխարհային շուկայում իրենց ամենաուժեղ մրցակցից — Գերմանիայից:

Օգտվելով «դեմոկրատական» երկրների թուլությունից, ֆաշիստական Գերմանիան իրեն միակցեց Ավստրիան, և անգլո-ֆրանսիական կառավարող շրջանների «չմիջամտելու» քաղաքականության օգնությամբ զավթելով Չեխոսլովակիան, ավազակային պատերազմն ընտրեց իբրև իր իմպերիալիստական նպատակների իրականացման միջոց:

Հայրենական պատերազմը, որը մեծագույն փորձություն հանդիսացավ Սովետական Միության համար, ավարտվեց մեր Սոցիալիստական պետության քաղաքական, ռազմական ու տնտեսական հաղթությամբ: Գերմանա-ֆաշիստական զավթիչները, որոնք իրենց նպատակ էին դրել վերականգնել մեր երկրում կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը, ոչնչացնել ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, վրացիների, ադրբեջանցիների, հայերի և ՍՍՌՄ մյուս ազատ ժողովուրդների ազգային պետականությունը, նրանց դարձնել գերմանական իշխանների ու բարոնների ստրուկներ, — գլխովին ջախջախվեցին և պարտություն կրեցին:





ՍՍՌՄ-ի դեմ հիտլերյան Գերմանիան իր ավազակային պատերազմն սկսեց 1941 թվականի հունիսի 22-ին, հանկարծակի և ուխտադրուժ հարձակումով: Պատերազմի սկզբին ֆաշիստական Գերմանիան և նրա բանակը գտնվում էին որոշ նպաստավոր պայմաններում: Գերմանիան ուներ միանգամայն պատրաստ, հազարավոր տանկերով ու ինքնաթիռներով զինված, մոտոռացված բանակ: Նա վաղօրոք ՍՍՌՄ սահմաններին էր մոտեցրել 170 դիվիզիա: Այնինչ Սովետական Միությունը, հանդիսանալով խաղաղասեր երկիր, չուներ լրիվ մոբիլիզացված բանակ:

Գերմանիան պատերազմն սկսելուց դեռ շատ առաջ իր ամբողջ տնտեսությունը փոխադրել էր ռազմական ռելսերի վրա: 1938 թվականին Գերմանիայի արդյունաբերական արտադրանքը ռազմական պատվերների շնորհիվ բարձրացել էր, կազմելով 1929 թվականի մակարդակի համեմատությամբ 120 տոկոս: Բացի դրանից, հիտլերյան Գերմանիայի տրամադրության տակ էին գտնվում նրա կողմից ստրկացված համարյա

ամբողջ Եվրոպայի արդյունաբերությունն ու ռազմա-ստրատեգիական ռեսուրսները:

Այնինչ Սովետական Միությունն իր ժողովրդական տնտեսությունը ռազմական ռելսերի վրա էր փոխադրում արդեն պատերազմի ընթացքում: Իսկ ժամանակակից պատերազմը, որը մոտորների պատերազմ է, պահանջում էր հսկայական քանակությամբ մեխանիզմներ ու մարտական տեխնիկա:

Գերմանա-ֆաշիստական զավթիչները, Եվրոպայում իրենց հեշտ հաղթանակներով արբեցած, հարձակում գործելով մեր երկրի վրա, հույս ունեին մեկ և կես-երկու ամսվա ընթացքում «վերջ դնել» Սովետական Միությանը, կարճ ժամանակում հասնել մինչև Ուրալ: Գերմանա-ֆաշիստական զավթիչները մշակել էին «կայծակնային» պատերազմի պլան:

Հանկարծակի և ուխտադրուժ հարձակման հետևանքով, կենդանի ուժի և մարտական տեխնիկայի հսկայական կորուստների գնով գերմանա-ֆաշիստական բանակին հաջողվեց պատերազմի առաջին շրջանում զավթել մեր երկրի մի զգալի տերիտորիա:

Սակայն հիտլերյան պարագլուխների այդ, ինչպես և մյուս բոլոր պլանները կազմված



էին առանց հաշվի առնելու մեծ Սովետական Միության ուժերն ու հնարավորությունները, դրանք թեթևամիտ և հիմնազուրկ պլաններ էին: Այդ պատճառով էլ պատերազմական գործողությունների արդեն առաջին շաբաթների ընթացքում «կայծակնային» պատերազմի պլանները լիովին ձախողվեցին:

Գերմանա-ֆաշիստական զավթիչները հաշվի չէին առել, որ Սովետական Միության ժողովուրդները Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ ստալինյան հնգամյակների տարիներին վիթխարի հաջողություններ էին ձեռք բերել սոցիալիստական շինարարության գործում, որ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության սոցիալիստական ինդուստրիալիզացիայի և գյուղատնտեսության կոլեկտիվացման հաջողությունները, որոնք ապահովեցին մեր երկրում սոցիալիստական հասարակակարգի կառուցմամբ, ստեղծել էին բոլոր անհրաժեշտ նախադրյալները մեր Հայրենիքի անկախությունն ու ազատությունը հաջողությամբ պաշտպանելու համար:

Հայրենական պատերազմի առաջին իսկ օրերից բոլշևիկների պարտիայի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդ ընկեր

Ստալինի կոչով Սովետական Միության աշխատավորները մեկ մարդու պես ոտքի ելան պաշտպանելու իրենց Հայրենիքի ազատությունն ու անկախությունը։

Սովետական Բանակը դեռևս 1941 թվականի վերջերին կործանիչ հակահարված տվեց թշնամուն Ռոստովի ու Տիխվինի մոտ, Ղրիմում և Մոսկվայի տակ։

Ընկեր Ստալինն անձամբ ղեկավարում էր Մոսկվայի պաշտպանությունը, անմիջականորեն ուղղություն էր տալիս Սովետական Բանակի գործողություններին, ոգեշնչում էր մարտիկներին ու հրամանատարներին, հրակում էր սովետական մայրաքաղաքի մատույցներում պաշտպանողական կառուցումների շինարարության ընթացքին։ Սովետական Բանակը ստալինյան հանճարեղ ստրատեգիական պլանով 1941 թվականի դեկտեմբերին Մոսկվայի տակ ջախջախեց հիտլերյան 50 ընտիր դիվիզիաներ և գերմանա-ֆաշիստական զավթիչներին ետ շպրտեց տեղտեղ մինչև 400 կիլոմետր դեպի արևմուտք, ամբողջ աշխարհին ցույց տալով իր անող հզորությունը։

Բայց թշնամին, օգտվելով երկրորդ ռազ-



մաճակատի բացակայությունից, 1942 թվականի ամառը Հարավ-Արևմտյան ուղղությամբ կենտրոնացրեց իր և կամակատար երկրների բոլոր ռեզերվները, մի նեղ ուղղությամբ ստեղծեց ուժերի մեծ գերակշռություն և, հարձակման անցնելով, հասավ մինչև Կովկասի նախալեռներն ու Ստալինգրադ։ Հիտլերյան հրամանատարությունը նպատակ ուներ շրջանցել Մոսկվան արևելքից, կտրել այն վոլգյան և ուրալյան թիկունքից, գրավել մեր Հայրենիքի մայրաքաղաքը։

Ընկեր Ստալինը բացառիկ մեծ նշանակություն տվեց Ստալինգրադի տակ մղվող ճակատամարտին, որովհետև Ստալինգրադի համար մղվող մարտերով վճռվում էր Սովետական պետության բախտը։ Սովետական ռազմիկները չտեսնված անձնազոհ հերոսություն ցուցաբերեցին Ստալինգրադյան կատաղի մարտերում, կրծքով պաշտպանելով յուրաքանչյուր տունը, յուրաքանչյուր փողոցը, և պատվով կատարեցին Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի հրամանը։

Ստալինգրադյան ճակատամարտն ավարտվեց Ստալինգրադի տակ գերմանական զորախմբի շրջապատումով ու լիակատար

ջախջախումով։ Այդտեղ շրջապատված հակառակորդի 22 դիվիզիայից ոչնչացվեց ու գերի վերցվեց թշնամու 300 հազար զինվոր ու սպա, այդ թվում 24 գեներալ, խմբավորման հրամանատար ֆոն Պաուլյուսի գլխավորությամբ։

Ստալինգրադյան ճակատամարտը շրջադարձային կետ հանդիսացավ հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող Հայրենական պատերազմի ընթացքի մեջ։ Պատերազմների պատմությունը չգիտե նման վիթխարի օպերացիայի հանճարեղ և հմուտ պլանավորման ու իրականացման մեկ այլ օրինակ, երբ պաշտպանվողները շրջապատում և ոչնչացնում են թշնամու այդպիսի մեծ քանակությամբ զորք ու մարտական տեխնիկա։

«Այդ ամենաաչքի ընկնող հաղթանակն էր մեծ պատերազմների պատմության մեջ։ Ստալինգրադի համար մղված ճակատամարտը ռազմական արվեստի պսակն է. այն ցույց տվեց սովետական առաջավոր ռազմական գիտության կատարելության մի նոր օրինակ։ Այստեղ ձեռք բերված պատմական հաղթությունը ստալինյան ստրատեգիայի ու տակտիկայի փայլուն հաղթանակն է, մեծ զորավարի հանճարեղ պլանի և իմաստուն



կանխատեսության հաղթանակը, զորավարի, որը խորաթափանցորեն բացահայտեց թշնամու մտադրությունները և օգտագործեց նրա ավանտյուրիստական ստրատեգիայի թույլ կողմերը»։ (Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին. Համառոտ կենսագրություն, էջ 216—217)։

Ստալինգրադյան ճակատամարտից հետո գերմանական զորքերն այլևս չկարողացան ուշքի գալ։ Սովետական Բանակը վերցնելով նախաձեռնությունը, ծավալեց հարձակողական գործողությունները։ Սկսվեց թշնամու մասսայական վռնդումը սովետական տերիտորիայից։

Գերմանա-ֆաշիստական հրամանատարությունը, չնայած 1942—1943 թվականի ձմեռը կրած պարտությանը և հսկայական կորուստներին, 1943 թվականի ամառը նոր հարձակման ձեռնարկեց։ Թշնամին նպատակ ուներ Օրյոլի և Բելգորոդի ուղղությամբ հարված հասցնելով, շրջապատել ու ոչնչացնել Կուրսկի աղեղում կենտրոնացված մեր զորքերին, ծրագրելով հետագա հարձակումը դեպի Մոսկվա։

Ընկեր Ստալինը ժամանակին կռահեց հակառակորդի պլանը և նախազգուշացրեց Օրյոլ-Կուրսկի ուղղությամբ գործող զորքերի

հրամանատարությանը։ Երբ 1943 թվականի հուլիսի 5-ին գերմանա-ֆաշիստական զորքերը խոշոր ուժերով անցան հարձակման, հանդիպեցին սովետական զորքերի կատաղի դիմադրությանը։ Սովետական զորքերը մի քանի օրվա ընթացքում հյուծելով և արյունաքամ անելով ֆաշիստական դիվիզիաներին, ճեղքեցին հակառակորդի ճակատը և իրենք անցան ուժեղ հարձակման։ 1943 թվականի ամառային հարձակման հետևանքով մեր զորքերն ազատագրեցին թշնամու կողմից օկուպացված սովետական տերիտորիայի մոտ երկու երրորդ մասը։

1943 թվականը եղավ Հայրենական պատերազմի ընթացքի մեջ վճռական բեկման տարի ռազմական, տնտեսական և քաղաքական տեսակետից։ Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ և սովետական հերոս ժողովրդի ջանքերով ստեղծված, արագ աճող ռազմական տնտեսությունն արդեն 1943 թվականին ապահովեց Սովետական Բանակի ռազմական տեխնիկայի քանակական ու որակական գերազանցությունը գերմանականի նկատմամբ։ Սովետական երկիրը, մեծ Ստալինի իմաստուն ղեկավարությամբ,



պատերազմի տարիներին և պատերազմում էր և կառուցում։

Դեռ 1941 թվականի նոյեմբերին, երբ համարյա ամբողջ աշխարհը Սովետական պետության գոյության «վերջին» օրերն էր հաշվում, ընկեր Ստալինը առաջարկեց Ուրալում և Սիբիրում սև մետալուրգիայի հզոր ձեռնարկությունների կառուցման մեծ պլան։ Օր ու գիշեր չէր դադարում արդյունաբերական նոր ձեռնարկությունների, հանքահորերի, էլեկտրակայանների կառուցումը։ Արդեն 1943 թվականին շահագործման հանձնվեցին նոր մետալուրգիական գործարանները Չելյաբինսկում և Ուզբեկստանում, նոր հնոցներ՝ Տագիլում, Մագնիտոգորսկում, ալյումինի նոր գործարանը Ստալինսկում։

Սովետական Բանակի մեծագույն հաղթանակները փոխեցին համաշխարհային պատերազմի ողջ հետագա ընթացքը և ունեցան միջազգային խոշոր նշանակություն։ Ֆաշիստական պետությունների բլոկն սկսեց քայքայվել։ Գերմանիայի գլխավոր դաշնակից՝ ֆաշիստական Իտալիան շուտով ռազմական ու քաղաքական պարտություն կրեց, և 1943 թվականի սեպտեմբերին անվերապահ կապիտուլյացիայի ենթարկվելով, շարքից դուրս եկավ։

Սովետական Բանակի ուժերը գնալով աճում էին, հակառակորդի ուժերը հետզհետե թուլանում։

1944 թվականին Սովետական Բանակն էլ ավելի ամրապնդվեց ու կոփվեց և ի վիճակի եղավ ավելի քան 3000 կիլոմետր երկարություն ունեցող ռազմաճակատի զանազան հատվածներում թշնամուն հասցնելու տասը հաջորդական կործանիչ հարված։

1944 թվականի ապրիլի 10-ին Ուկրաինական չորրորդ ռազմաճակատի զորքերը Ծովափնյա Առանձին բանակի զորամասերի փոխգործողությամբ հարձակման անցան և մայիսի 12-ին ամբողջապես մաքրեցին Ղրիմը։ Ղրիմի, Կերչ ու Սևաստոպոլ քաղաքների ազատագրմանն ակտիվ մասնակցություն ունեցավ Հայկական Թամանյան հրաձգային դիվիզիան։ Հայ ժողովրդի զավակները, եղբայրական ժողովուրդների հետ միասին, Ղրիմում մասնակցեցին գերմանական խմբավորման ջախջախմանը։ Մեր Հայրենիքին վերադարձվեց ռուսական փառքի քաղաք Սևաստոպոլը։

Հարված-հարվածի հետևից հասցնելով, Սովետական Բանակը շրջապատեց ու ոչնչացրեց թշնամու զորքերին, և 1944 թվականին Սովետական Միության տերիտորիան ար-



դեն ամբողջապես մաքրվեց գերմանա-ֆաշիստական աղտեղությունից։ Սովետական Միության սրբազան պետական սահմանը լիովին վերականգնվեց։ Պատերազմական գործողությունները փոխադրվեցին հիտլերյան Գերմանիայի կամակատար երկրների տերիտորիան, իսկ ապա նաև բուն Գերմանիայի տերիտորիան։ Հիտլերյան Գերմանիայի նախկին դաշնակիցները՝ Ռումինիան, Ֆինլանդիան և Բուլղարիան զենքը ցած դրին Սովետական Բանակի առջև և դեմոկրատական ուժերի նախաձեռնությամբ պատերազմ սկսեցին Գերմանիայի դեմ։

Սովետա-գերմանական ռազմաճակատում ստեղծված այդպիսի դրությունն անհանգստացրեց անգլո-ամերիկյան քաղաքականության պարագլուխներին։ Արդեն պարզ էր, որ Սովետական Բանակը մենակ էլ ի վիճակի է ոչ միայն ամբողջապես օկուպացնելու Գերմանիան, այլև ազատագրելու ֆրանսիական ժողովրդին։ Եվ եթե Անգլիայի այն ժամանակվա պրեմյեր-մինիստր Չերչիլլը, որն անգլո-ամերիկյան ռեակցիայի քաղաքականության հետևողական կիրառողն էր, մինչև այդ ամեն կերպ ընդդիմանում էր երկրորդ ռազմաճակատի բացմանը, ապա

Սովետական Բանակի սրընթաց հարձակումը նրան ստիպեց արագացնելու երկրորդ ռազմաճակատի բացումը։ 1944 թվականի հունիսին դաշնակիցները դեսանտ իջեցրին Հյուսիսային Ֆրանսիայում։

1945 թվականի հունվարին սովետական զորքերն սկսեցին սրընթաց ու մեծ մասշտաբի հարձակում Բալթիկ ծովից մինչև Կարպատյան լեռներն ընկած ճակատով։ Սովետական տանկերն ու ինքնաթիռները, թնդանոթներն ու գվարդիական ականանետներն արդեն որոտում էին բուն Գերմանիայի տերիտորիայում։ Սովետական Բանակը գրավեց Արևելյան Պրուսիայի մեծ մասը, ճանապարհ բացեց դեպի Բրանդենբուրգ, Պոմերանիա, դեպի Բեռլինի մատույցները։

Հիմնական նախապատրաստությունից հետո սովետական զորքերը, Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի հրամանով, սկսեցին վճռական գրոհը ֆաշիստական գազանի որջի՝ Բեռլինի վրա։ 1945 թվականի ապրիլի 16-ին ճեղքելով հակառակորդի պաշտպանությունը, Սովետական Բանակը սրընթաց շարժվեց դեպի Գերմանիայի մայրաքաղաքը։ 1945 թվականի մայիսի 2-ին



ավարտվեց գերմանա-ֆաշիստական զորքերի բեռլինյան խմբավորման լիակատար ջախջախումը։ Սովետական Բանակը գրավեց Բեռլինը՝ գերմանական իմպերիալիզմի կենտրոնն ու գերմանա-ֆաշիստական ագրեսիայի օջախը։ Սովետական զորքերը պատվով կատարեցին Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի մարտական հրամանը, և Հաղթանակի դրոշը բարձրացրին Բեռլինի վրա։

Մայիսի 8-ին գերմանական գլխավոր հրամանատարության ներկայացուցիչները Բեռլինում ստորագրեցին անվերապահ կապիտուլյացիայի ակտը։ Մայիսի 9-ին Արևմուտքում դադարեց թնդանոթների որոտը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի հիմնական օջախը լիկվիդացված էր։ Հասավ ամբողջ մարդկության համար բաղձալի օրը—պատմական Հաղթանակի օրը։

Այդ՝ առաջադիմության ուժերի հաղթանակն էր ռեակցիայի ուժերի դեմ, սոցիալիզմի հաղթանակը ֆաշիզմի դեմ, սոցիալիստական սիստեմի հաղթանակը կապիտալիստականի նկատմամբ, սովետական զինված ուժերի հաղթանակը ֆաշիստական Գերմանիայի դեմ։ Սովետական Բանակը ամ-

բողջ աշխարհի առջև հանդես եկավ իբրև ազատարար բանակ:



Հայրենական Մեծ պատերազմում սովետական ժողովրդի և նրա բանակի բոլոր հաղթանակների կազմակերպողն ու ոգեշնչողը եղավ Լենինի-Ստալինի փառապանծ պարտիան: Պարտիայի կազմակերպող դերը դրսևորվում էր սովետական ժողովրդի գործունեության բոլոր բնագավառներում՝ թիկունքում և ռազմաճակատում, բանակի ղեկավարության, զորքերի դաստիարակման, մատակարարման գործում, ռազմաճակատի, արդյունաբերության, գյուղատնտեսության ղեկավարման գործում, գիտության ու տեխնիկայի զարգացման ասպարեզում,— և այդ բոլորը մոբիլիզացվեց թշնամու դեմ հաղթանակ տանելու համար: Ռազմաճակատում և թիկունքում, թեժ մարտերի և ստեղծագործ աշխատանքի մեջ կոմունիստները ցույց տվին անձնվիրության և Հայրենիքի նկատմամբ անսահման սիրո փայլուն օրինակներ:

Աշխարհի ոչ մի այլ պետություն չէր կարողանա դիմանալ այն դաժան փորձություն-



ներին, որոնք բաժին ընկան Սովետական Միությանը: Հիտլերյան Գերմանիայի դեմ տարած հաղթանակը նշանակում է, որ հաղթեց մեր սովետական հասարակակարգը, հաղթեց սովետական պետական կարգը:

Պատերազմի ընթացքում ավելի ու ավելի էր կոփվում Սովետական Միության ժողովուրդների եղբայրական բարեկամությունը: Բոլշևիկյան պարտիայի կոչով Սովետական Միության բոլոր ժողովուրդները, ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, ոտքի ելան պաշտպանելու իրենց Հայրենիքը: Ռուս ժողովուրդը Հայրենական Մեծ պատերազմում արժանացավ ընդհանուր ճանաչման իբրև Սովետական Միության ղեկավար ուժ մեր երկրի բոլոր ժողովուրդների մեջ: Ռուս ժողովրդի անսահման վստահությունը Սովետական կառավարությանը, հավատը նրա քաղաքականության ճշտության նկատմամբ և ամեն տեսակ աջակցությունը սովետական կառավարությանն ու բոլշևիկյան պարտիային, հանդիսացան այն վճռողական ուժը, որն ապահովեց պատմական հաղթանակը մարդկության թշնամի ֆաշիզմի նկատմամբ» (Ստալին):



ՍՍՌՄ բոլոր ժողովուրդների թվում հայ

Ժողովուրդը ևս ռազմաճակատում ու թիկունքում անձնվիրաբար մարտնչում և աշխատում էր մեր մեծ Հայրենիքի պաշտպանության համար։ Հայաստանի բանվորները, կոլխոզնիկներն ու ինտելիգենցիան բոլոր ուժերը գործադրեցին թշնամու ջախջախումն արագացնելու համար։ Հայ ժողովրդի զավակները փառապանծ Սովետական Բանակի շարքերում անձնվիրաբար պաշտպանում էին Մոսկվան, Լենինգրադը ,Ստալինգրադը, Սևաստոպոլը, մասնակցեցին Վարշավայի, Պրագայի, Վիեննայի, Բուխարեստի ազատագրմանը, Բեռլինի գրավմանը։ Բեռլինի համար մղված մարտերին անմիջականորեն մասնակցած միավորումների թվումն է Հայկական Թամանյան Կարմրադրոշ, Կուտուզովի երկրորդ աստիճանի և Կարմիր Աստղի շքանշանակիր հրաձգային դիվիզիան։

Հայկական ՍՍՌ միայն Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղից Սովետական Բանակի շարքերում մարտնչում էին 680 մարդ, այդ թվում 120 սպա, որից 3 գեներալ, 6 գնդապետ և այլն։ Չհաշվելով թիկունքում կատարած անձնվեր աշխատանքի համար պարգևատրվածներին, Հայրենական Մեծ պատերազմի ռազմաճակատներում այդ գյուղից



480 մարդ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով։

Այս թվերը, իբրև մի օրինակ, ցույց են տալիս հայ ժողովրդի ակտիվ մասնակցությունը գերմանական զավթիչների դեմ մղված պատերազմին։

***

Հայրենական պատերազմի հաղթական ավարտումից հետո սովետական ժողովուրդը, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ, ձեռնամուխ եղավ գերմանական ֆաշիստների ավերած ժողովրդական տնտեսության վերականգնմանը, պատերազմի ծանր հետևանքները վերացնելուն։

Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի հոյակապ պլաններն ապահովում են Սովետական Միության ժողովրդական տնտեսության արագ վերականգնումն ու հետագա զարգացումը։ Սովետական ժողովուրդը հետպատերազմյան ստալինյան հնգամյա պլանն ընդունեց իբրև իր գործունեության մարտական ծրագիր, որը համապատասխանում է նրա կենսական շահերին։

Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդն իր անձնվեր

աշխատանքով հետպատերազմյան շրջանում հսկայական հաջողություններ է ձեռք բերել երկրի տնտեսության և կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Միայն 1947 թվականին արդյունաբերական արտադրանքի թողարկումը ՍՍՌՄ-ում աճեց 22 տոկոսով։ Մինչդեռ եվրոպական բոլոր բուրժուական երկրները գտնվում են հետպատերազմյան դժվարությունների ճիրաններում, իսկ ամենաուժեղ կապիտալիստական տերության՝ ԱՄՆ-ի տնտեսությունը կանգնած է ճգնաժամի շեմքին։

Հաջողությամբ հաղթահարելով հետպատերազմյան դժվարությունները, սովետական ժողովուրդն արագ տեմպերով զարգացնում է իր արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը։ ՍՍՌՄ արդյունաբերության վճռական ճյուղը՝ ծանր արդյունաբերությունը զարգանում է բուռն տեմպով. չուգունի ձուլումը 1947 թվականին նախորդ տարվա համեմատությամբ աճեց 14 տոկոսով, գլանվածքի արտադրությունը 15 տոկոսով, ածխի հանույթը 12 տոկոսով, նավթի հանույթը 19 տոկոսով, էլեկտրոէներգիայի արտադրությունը 15 տոկոսով։ Զգալիորեն աճեց լայն սպառման առարկաների ու մթերքների արտադրությունը։



Էլ ավելի ուշագրավ են ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման տեմպերը 1948 թվականին։ Այս տարվա առաջին եռամսյակում ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը, անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ աճեց 32 տոկոսով։ Բուռն թափով զարգանում են ժողովրդական տնտեսության համար կարևոր նշանակություն ունեցող ծանր արդյունաբերության ճյուղերը։ Անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ 1948 թվականի առաջին եռամսյակում չուգունի ձուլումը ՍՍՌՄ-ում աճեց 36 տոկոսով, պողպատի ձուլումը՝ 41 տոկոսով, գլանվածքի արտադրությունն աճել է 43 տոկոսով, քարածխի արտադրությունը 20, նավթինը՝ 24 տոկոսով, էլեկտրոէներգիայի արտադրությունը՝ 18 տոկոսով, ավտոմոբիլների արտադրությունը երկրում ավելի քան կրկնապատկվել է, մոտ երկու և կես անգամ աճել է գյուղատնտեսական մեքենաների և տրակտորների արտադրությունը։

Ընդարձակվում է լայն սպառման ապրանքների և սննդամթերքի արտադրությունը։ 1947 թվականի առաջին եռամսյակի հա-

մեմատությամբ այս տարվա առաջին եռամսյակում բամբակե գործվածքեղենի արտադրությունն աճել է 44 տոկոսով, բրդե գործվածքեղենինը՝ 32 տոկոսով, կաշվե կոշկեղենինը՝ 18, ռետինե կոշկեղենինը՝ 41 տոկոսով, գուլպեղենինը՝ 37 տոկոսով։ Աճել է նաև սննդամթերքի արտադրությունը, ըստ որում կենդանական յուղի արտադրությունը անցյալ տարվա առաջին եռամսյակի համեմատությամբ ավելի քան կրկնապատկվել է, բուսական յուղի արտադրությունն աճել է 51 տոկոսով, շաքարի արտադրությունը 8,7 անգամ, օճառի արտադրությունը 54 տոկոսով։

Աշխատանքի արտադրողականության աճմանը և ժողովրդի նյութական բարեկեցության մակարդակի հետագա բարձրացմանը նպաստեց պարտիայի և կառավարության կարևորագույն միջոցառումը— դրամական ռեֆորմը և արդյունաբերական ու պարենային ապրանքների քարտային սիստեմի վերացումը։

Հնգամյակի հաջող կատարման համար մղվող պայքարում ծնունդ առան սոցիալիստական մրցության և ստախանովյան աշխատանքի նոր ձևեր։ Մասսայական չափեր է ընդունել բանվորների և բանվորուհիների,



արդյունաբերության, տրանսպորտի և գյուղատնտեսության աշխատողների հայրենասիրական շարժումը հետպատերազմյան հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։ Մոսկվայի «Կալիբր» գործարանի վարպետ Նիկոլայ Ռոսսիյսկու և Չելյաբինսկի տեխնոլոգ Ալեքսանդր Իվանովի արժեքավոր փորձը, որոնք կարողացան կարճ ժամանակամիջոցում կրկնապատկել աշխատանքի արտադրողականությունը, այժմ լայնորեն տարածվում է մեր արդյունաբերական ձեռնարկություններում։

Ամբողջ Սովետական երկրում լայնորեն ծավալված նախամայիսյան սոցիալիստական մրցությունը հիանալի արդյունքներ տվեց։ Խոշորագույն արդյունաբերական կենտրոններում շատ ձեռնարկություններ մինչև մայիսի 1-ը կատարեցին հինգ ամսվա պլանը։ Երկիրը պլանից ավելի ստացավ հարյուր հազարավոր տոննա ածուխ, հազարավոր տոննաներով մետաղ, միլիոնավոր մետր գործվածքեղեն, հարյուրավոր նոր մեքենաներ և միլիոնավոր ռուբլիների լայն սպառման ապրանքներ։

Միայն Մոսկվայում և Մոսկվայի մարզում ավելի քան 250 արդյունաբերական

ձեռնարկություններ արդեն կատարել են հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա հինգ ամսվա պլանը։

Ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա կարևորագույն խնդիրն է հանդիսանում զարգացման տեմպերի ուժեղացումը, շինարարական գործի բարելավումը, շահութաբեր աշխատանքը, խնայողությունն ամեն բանում, աշխատանքը առանց պետական դոտացիայի, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը և սոցիալիստական կուտակման ավելացումը։



Գյուղատնտեսության վերելքի ասպարեզում նույնպես մեր երկիրը հսկայական հաջողություններ է ձեռք բերել։ Գյուղատնտեսության հետպատերազմյան վերականգնման գլխավոր դժվարությունները հաղթահարված են։ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի պատմական որոշումը բացառիկ կարևոր նշանակություն ունեցավ ամբողջ գյուղատնտեսության վերելքի, կոլխոզների կազմակերպա-կան-տնտեսական ամրապնդման, կոլխոզային դաշտերի



բերքատվության բարձրացման գործում։ 1947 թվականին հողագործության արտադրանքն աճեց 48 տոկոսով, ըստ որում հացահատիկային կուլտուրաների համախառն բերքն աճեց 58 տոկոսով, բամբակինը՝ 21 տոկոսով, կարտոֆիլինը 30 տոկոսով։ Հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը 1947 թվականին հասավ մինչպատերազմյան մակարդակին։

Գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերված այս հաջողությունները ցույց են տալիս սոցիալիստական հողագործության անսպառ ռեզերվներն ու հնարավորությունները։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերով հողագործության լավագույն վարպետներին, որոնք աչքի ընկան 1947 թվականին բարձր բերքի համար մղված պայքարում, շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։

Ներկայումս երկրի դաշտերում պայքար է ծավալվում նոր, ավելի բարձր բերքի համար։ Սոցիալիստական մրցությունը կոլխոզային գյուղում ընդունել է մեծ թափ ու ծավալ։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1948 թվականի ապրիլի 24-ի Հրամանագիրը՝ «Ցորենի, տարեկանի, եգիպտա-

ցորենի, բրնձի, բամբակի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի, երեքնուկի, առվույտի և տիմոֆեևկայի բարձր բերք ստանալու համար կոլխոզնիկներին, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրելու մասին» գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման մի նոր ուժեղ խթան կհանդիսանա:

***

Սովետական Միության բոլոր ռեսպուբլիկաների հետ միասին, Սովետական Հայաստանը նույնպես հետպատերազմյան տարիներին զգալի հաջողություններ է ձեռք բերել արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման գործում: Հետպատերազմյան տարիներին մեծ աշխատանք է ծավալվել Սևանի ջրհան կայանի կառուցման, Գյումուշի հիդրոէլեկտրակայանի շինարարության ուղղությամբ, արագ թափով ընթանում է Քաջարանի պղինձ-մոլիբդենի կոմբինատի շինարարությունը: Արդեն շահագործման են հանձնվել ստալինյան հնգամյակի նորակառույցներ՝ Երևանի կա-



բելի, լայն սպառման մետաղյա ապրանքների գործարաններն ու մահուդի ֆաբրիկան, Համամլուի շաքարի գործարանը, Կիրովականի կորդայի ֆաբրիկան, Ալավերդու սուպերֆոսֆատի գործարանն ու էլեկտրոլիզի ցեխը:

1947 թվականին Սովետական Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք ստացավ: Հացահատիկային կուլտուրաների բարձր բերք ստանալու գործում անձնվեր աշխատանքի համար մեր Ռեսպուբլիկայի 15 կոլխոզնիկներ և կոլխոզնիկուհիներ արժանացան Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի պատվավոր կոչմանը: Սովետական Հայաստանի ողջ կոլխոզային գյուղացիությունը հպարտանում է գյուղատնտեսական ֆրոնտի այդ առաջավորներով, օրինակ է վերցնում նրանցից, լայն աշխատանք է ծավալում ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա գարնանացանն օրինակելիորեն անցկացնելու համար:

Գործարաններում և ֆաբրիկաներում, շինարարություններում և էլեկտրակայաններում, կոլխոզային ու սովխոզային դաշտերում, Ռեսպուբլիկայի ՄՏ կայաններում

լայնորեն ծավալվում է սոցիալիստական
մրցությունը արտադրական պլանների կա-
տարման ու գերակատարման համար: «Հըն-
գամյակը չորս տարում» լոզունգը դարձել է
մեր Ռեսպուբլիկայի յուրաքանչյուր աշխա-
տողի պայքարի դրոշը:

Ներկայումս, երբ սովետական ժողովուր-
դը, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավա-
րությամբ, վստահորեն ընթանում է դեպի
կոմունիստական հասարակակարգի կառու-
ցումը, մեր ժողովրդի կուլտուրական մա-
կարդակի բարձրացման խնդիրը մեծ նշանա-
կություն է ստանում: Պարտիան և կառավա-
րությունը հսկայական ուշադրություն են
նվիրում սովետական գիտության զարգաց-
մանը: Սովետական գիտնականները ձըգ-
տում են բոլոր ուժերով օգնել հնգամյակը
ժամկետից շուտ կատարելուն: Սոցիալիս-
տական աշխատանքի նովատորների նվա-
ճումները պահանջում են ընդհանրացնել ու
տարածել նրանց փորձը, և այդ տեսակե-
տից պատվավոր խնդիր ունեն կատարելու
սովետական գիտության ու տեխնիկայի աշ-
խատողները:



Երեք տարի է անցել ֆաշիստական Գեր-



մանիայի դեմ տարած պատմական հաղթա-
նակի օրից, երեք տարի է անցել այն ժամա-
նակից, երբ ամբողջ աշխարհի ժողովուրդ-
ները բերկրանքով արտասանեցին բոլորի
սրտերին հարազատ ու մոտիկ բառը — Հաղ-
թանակ:

Այս երեք տարվա ընթացքում Սովետական
Միության ժողովուրդները ցույց են տվել
իրենց հայրենիքի բարօրության համար կա-
տարվող անձնվեր աշխատանքի օրինակ:
Սովետական հերոս ժողովուրդը, որ ազա-
տության և անկախության համար անձնա-
զոհ պայքարի օրինակ էր ծառայում, այժմ
էլ ցույց է տալիս, թե ինչպես պետք է կա-
ռուցել խաղաղ կյանքը:

Գերմանա-ֆաշիստական զավթիչների և
ճապոնական իմպերիալիստների դեմ ձեռք
բերված հաղթանակի հետևանքով անչափ
աճեց Սովետական Միության հեղինակու-
թյունը միջազգային ասպարեզում: Հաղթա-
նակն ամրապնդելու, դեմոկրատական ար-
դարացի խաղաղությունը կազմակերպելու
գործում ՍՍՌՄ-ն ընթանում է դեմոկրատա-
կան ու հակաիմպերիալիստական լագերի
ավանգարդում: Աշխարհի ճնշված ժողո-
վուրդները հուսալի հայացքով նայում են

դեպի Սովետական Միությունը, իբրև իրենց
շահերի միակ ու հետևողական պաշտպանի։

Սովետական Միության խաղաղասիրա-
կան քաղաքականության, մեծ և փոքր ժողո-
վուրդների հետ բարեկամական ու բարի-
դրացիական հարաբերությունների մարմնա-
ցումն է հանդիսանում բարեկամության, հա-
մագործակցության և փոխադարձ օգնության
պայմանագրերի կնքումը Սովետական Միու-
թյան և Չեխոսլովակիայի, Հարավսլավիա-
յի, Լեհաստանի, Բուլղարիայի, Ռումինիայի,
Հունգարիայի ու Ֆինլանդիայի միջև։ Այդ
պայմանագրերը մի նոր, չափազանց կարևոր
էտապ են հետպատերազմյան խաղաղու-
թյունն ամրապնդելու գործում։ ՍՍՌՄ-ը
հանդիսանում է խաղաղության և անվտան-
գության, ժողովուրդների ազատության և
անկախության հուսալի հենարանը։

Հաղթանակի պատմական օրը— Մայիսի
9-ին ամբողջ առաջադեմ մարդկության հա-
յացքն ուղղվում է դեպի Մոսկվա—Կրեմլ,
որտեղ ի բարօրություն բոլոր աշխատավոր-
ների անդուլ կերպով աշխատում է այդ
Հաղթանակի կազմակերպողն ու ոգեշնչողը,
մեր ժամանակի ականավոր զորավար, բոլոր



ճնշված ժողովուրդների մեծ բարեկամ ու ա-
ռաջնորդ Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինը։

Ստալինյան իմաստուն արտաքին քաղա-
քականությունը և սովետական ժողովրդի
հերոսական աշխատանքը, Լենինի-Ստալինի
պարտիայի ղեկավարությամբ, ամրապնդում
են մեծ Սովետական Միության հզորությու-
նը և ուժգին հարված են հանդիսանում ընդ-
դեմ միջազգային ռեակցիայի։

Պայքարելով կոմունիստական հասարա-
կակարգի կառուցման համար, սովետական
ժողովուրդը երբեք աչքաթող չի անում մի-
ջազգային ռեակցիայի ոտնձգությունները
Սովետական Միության ու նոր դեմոկրա-
տիայի երկրների դեմ և անդուլ կերպով ամ-
րապնդում է Սոցիալիզմի Երկրի պաշտպա-
նական հզորությունը։

Փա՜ռք Սոցիալիզմի Երկրի Զինված ուժե-
րին, որոնք պատվով պաշտպանեցին մեր
մեծ Հայրենիքի ազատությունն ու անկախու-
թյունը, նվաճեցին հաղթանակը հիտլերյան
Գերմանիայի դեմ, և այժմ էլ արթուն պահ-
պանում են սոցիալիզմի նվաճումները մեր
երկրում։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀՈՒԺԿՈՒ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ

«Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին» ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի Փետրվարյան պլենումի որոշման մեջ մատնանշված է, որ «Այժմ, խաղաղ շինարարության անցնելուց հետո, մեր պարտիայի և պետության առաջ նորից, որպես ամենաանհետաձգելի խնդիր, ամբողջ հասակով ծառացել է գյուղատնտեսության այնպիսի վերելքի ապահովումը, որը թույլ տար ամենակարճ ժամկետում ըստեղծել պարենի առատություն՝ մեր բնակչության համար, հումքի՝ թեթև արդյունաբերության համար և պետական անհրաժեշտ պարենային ու հումքային ռեզերվների կուտակում»։

Փետրվարյան պլենումի ծրագրային որոշումը կենսագործելու համար անցյալ տարի



կոլխոզային գյուղացիությունը հսկայական աշխատանք կատարեց, որը տվեց իր փայլուն արդյունքները։ Հացահատիկի համախառն բերքը ՍՍՌՄ-ում նախորդ տարվա համեմատությամբ 1947 թվականին աճեց 58 տոկոսով, բամբակինը՝ 21 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 190 տոկոսով, կարտոֆիլինը՝ 30 տոկոսով և այլն։ 1947 թվականին երկիրն ստացավ այնքան հացահատիկ, որքան ստացվում էր նախապատերազմյան լավագույն տարիներին։

Այս բանը Սովետական պետությանը հնարավորություն տվեց վերացնելու պարենային ապրանքների քարտային սիստեմը, իջեցնելու ապրանքների գները, որն իր հերթին զգալիորեն բարձրացրեց աշխատավորների կենսամակարդակը։

Անցյալ տարի բարձր բերքի վարպետների շարքերն է՛լ ավելի խտացան։ Կոլխոզային գյուղացիության ծոցից ելան նոր նովատորներ, ջերմ հայրենասերներ, որոնք բարձր բերքի համար պայքարելու փայլուն օրինակներ ցույց տվին։ Բարձր բերք ստանալու համար գյուղատնտեսության առաջավորներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի

կոչում շնորհելու և ՍՍՌՄ շքանշաններով ու
մեդալներով պարգևատրելու մասին ՍՍՌՄ
Գերագույն Սովետի Նախագահության 1947
թ. մարտի 29-ի Հրամանագրին համապա-
տասխան, բարձր բերքի 1395 վարպետներ
արժանացել են Սոցիալիստական Աշխա-
տանքի Հերոսի կոչման, հազարավոր կոլ-
խոզնիկներ պարգևատրվել են ՍՍՌՄ շքա-
նշաններով և մեդալներով:

ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլե-
նումի որոշման կենսագործման համար մղվող
պայքարում անցյալ տարի ձեռք բերվեց ա-
ռաջին խոշոր հաղթանակը: Այժմ խնդիրն
այն է, որ ամրապնդվի այդ հաղթանակը,
ծավալուն պայքար կազմակերպվի սոցիա-
լիստական դաշտերի բերքատվության հետա-
գա ընդհանուր վերելքի համար:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահու-
թյան 1948 թվականի ապրիլի 24-ի Հրամա-
նագիրը՝ «Ցորենի, տարեկանի, եգիպտացո-
րենի, բրնձի, բամբակի, շաքարի ճակնդեղի,
արևածաղկի, երեքնուկի, առվույտի և տիմո-
ֆեևկայի բարձր բերք ստանալու համար կոլ-
խոզնիկներին, ՄՏ կայանների ու սովխոզ-
ների աշխատողներին Սոցիալիստական Աշ-



խատանքի Հերոսի կոչում շնորհելու և ՍՍՌՄ
շքանշաններով ու մեդալներով պարգևատրե-
լու մասին» բացառիկ կարևորություն ունե-
ցող փաստաթուղթ է, որը փայլուն հեռանը-
կարներ է բաց անում սոցիալիստական
գյուղատնտեսության հետագա է՛լ ավելի
բուռն ծաղկման, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի
Փետրվարյան պլենումի որոշումը մինչև
վերջը կենսագործելու համար:

Սոցիալիստական գյուղատնտեսության
հետագա վերելքի գործում կարևորագույն
տեղ է գրավում պայքարը հացահատիկային,
տեխնիկական, ձիթատու կուլտուրաների և
բազմամյա ցանովի խոտաբույսերի բերքա-
տվության բարձրացման համար: Ուստի նըշ-
ված կուլտուրաների բարձր բերքի համար
մղվող պայքարում կոլխոզնիկներին, ՄՏ
կայանների ու սովխոզի աշխատողներին
խրախուսելու նպատակով ՍՍՌՄ Գերագույն
Սովետի Նախագահությունը սահմանել է
գյուղատնտեսության առաջավորներին Սո-
ցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում
շնորհելու կամ նրանց ՍՍՌՄ շքանշաններով
ու մեդալներով պարգևատրելու նոր, ավելի
բարձր ցուցանիշներ:

Այս տարվա Հրամանագիրը մի շարք առանձնահատկություններ ունի։ Ներկա Հրամանագիրը ցորենի, տարեկանի, եգիպտացորենի, բրնձի, բամբակի, շաքարի ճակնդեղի, արևածաղկի բերքատվության նոր, ավելի բարձր ցուցանիշներ է սահմանել 1948 և 1949 թվականների համար։ Բարձր բերք ստանալ ավելի մեծ տարածություններից, այսինքն գյուղատնտեսական կուլտուրաների մշակման և բերքատվությունը բարձրացնելու ասպարեզում ստեղծել ընդհանուր վերելք, որպեսզի մեր երկիրն ունենա ավելի շատ հացահատիկ, ավելի շատ բամբակ, շաքարի ճակնդեղ, ավելի շատ բուսական յուղ։ Այդ հնարավորություն կտա, որ մեր երկրի բնակչությունն ստանա առատ սննդամթերք, իսկ արդյունաբերությունը՝ հումք, կբազմապատկվեն պետական պարենային և հումքային ռեզերվները, որն է՛լ ավելի կհզորացնի մեր սոցիալիստական Հայրենիքը։ Այս է նոր Հրամանագրի գլխավոր իմաստը։

Իսկ ի՞նչպես կարելի է ավելի բարձր բերք ստանալ։ Դրա համար անհրաժեշտ է ծավալել սոցիալիստական մրցությունը, սոցիալիստական դաշտերի հերոսների, բարձր



բերքի վարպետների փորձը հաղորդել բոլորին, ընդհանուր վերելք ստեղծելու համար։ «Սոցիալիստական մրցությունն ասում է. ոմանք վատ են աշխատում, մյուսները՝ լավ, ոմանք՝ ավելի լավ,—հասի՛ր լավագույններին և ձեռք բեր ընդհանուր վերելք» (Ստալին)։

Հրամանագիրը բերքատվության ցուցանիշներ սահմանել է 1948 և 1949 թվականների համար, այլ ոչ թե մեկ տարվա, ինչպես անցյալ տարի էր, որովհետև գյուղատնտեսական աշխատանքները կոմպլեքսային աշխատանք են, նրանք լրացնում են միմյանց։ Այս տարի կատարված ցրտահերկով եկող տարվա բարձր բերքի հիմքն է դրվում, այս տարվա աշնանացանի բերքը հավաքվում է մյուս տարի, անցյալ տարվա աշնանացանը սնուցվում, փոցխվում, նրա բերքը հավաքվում է այս տարի, անցյալ տարվա ցրտահերկի վրա գարնանացան է կատարվում այս տարի։ Ժամանակին կատարեցիր պետական պարտավորությունները, ամբարեցիր լավորակ սերմացու այս տարի, նշանակում է լավ սերմացու ես ցանելու ոչ միայն աշնանը, այլև մյուս տարի՝ գարնանը։ Ով լավ է աշխատում և

հողն այս տարի, նա ոչ
լավ է մշակում ... ստանում
միայն այս տարի է բարձր բերք ստանում
այլև մյուս տարին: Միշտ առաջ գնալ, միշտ
առաջ նայել, այս է պարտիայի և կառավա-
րության պահանջը:

Այս տարվա Հրամանագրում նորը նաև
այն է, որ այստեղ սահմանված են երեքնուկի,
առվույտի և տիմոֆեևկայի սերմերի հավաք-
ման ցուցանիշներ: Խոտացանությունը շատ
անհրաժեշտ է անասնաբուծության զարգաց-
ման ու վերելքի համար: Առանց կերի ամուր
բազայի չի կարող զարգանալ անասնա-
պահությունը, ուստի անհրաժեշտ է ընդհա-
նուր վերելք ստեղծել նաև խոտացանության
ասպարեզում: Խոտացանությունը անհրա-
ժեշտ է ոչ միայն կեր ունենալու համար,
այն կարևոր է նաև հողի կուլտուրական մը-
շակման համար, ճիշտ ցանքաշրջանառու-
թյուն կիրառելու համար: Խոտացանությունը
նաև լավագույն միջոց է հացաբույսերի բեր-
քատվությունը բարձրացնելու գործում:

Բուսական յուղերը ծառայում են ոչ միայն
որպես սննդամթերք բնակչության համար,
այլև որպես հումք մեր արդյունաբերության
համար: Ահա թե ինչու նոր Հրամանագրով



հատուկ ցուցանիշներ են սահմանված նաև
ձիթատու կուլտուրաների համար, և այդ
կուլտուրաների բարձր բերք ստացող գյու-
ղատնտեսության առաջավորներին նույնպես
շնորհվում է Սոցիալիստական Աշխատանքի
Հերոսի կոչում կամ նրանք պարգևատրվում
են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահու-
թյան նոր Հրամանագիրը սահմանել է գյու-
ղատնտեսական կուլտուրաների բերքատվու-
թյան գոտային ցուցանիշներ: Ուկրաինա-
կան ՍՍՌ անտառատափաստանային շրջան-
ների և Հյուսիսային Կովկասի բավականա-
չափ խոնավ շրջանների համար այլ ցուցա-
նիշներ են սահմանված, իսկ Կենտրոնական-
Սևահողային գոտու շրջանների համար այլ
ցուցանիշներ: Անդրկովկասի շրջանների հա-
մար, որի մեջ մտնում են Ադրբեջանական
ՍՍՌ-ն, Հայկական ՍՍՌ-ն, Վրացական
ՍՍՌ-ն և Դաղստանի ԱՍՍՌ-ն, սահման-
ված են այլ ցուցանիշներ: Օրինակ՝ անցյալ
տարի կոլխոզի դաշտավարական բրիգադա-
յի օղակավարը կարող էր Սոցիալիստական
Աշխատանքի Հերոսի կոչում ստանալ, եթե
նրա օղակը 8 հեկտար հողամասի յուրա-

քանչյուր հեկտարից ստացել էր 30 ցենտներ հացահատիկ: Իսկ նոր Հրամանագրով նախատեսված է 15 հեկտար հողամասի յուրաքանչյուր հեկտարից ստանալ 28 ցենտներ հացահատիկ: Դրան համապատասխան, բարձր պահանջներ են ներկայացված նաև կոլխոզային բրիգադիրների, ագրոնոմների, սովխոզների բաժանմունքների (ֆերմաների) վարիչների, գյուղատնտեսների, մեխանիկների, տրակտորային բրիգադների բրիգադիրների ու տրակտորիստների, ավագ գյուղատնտեսների և ավագ մեխանիկների համար:

Հրամանագրով սահմանված է, որ կոլխոզների ու սովխոզների դաշտավարական բրիգադների բրիգադիրներին ու օղակավարներին, կոլխոզների նախագահներին ու գյուղատնտեսներին, սովխոզների բաժանմունքների (ֆերմաների) վարիչներին, գյուղատնտեսներին ու մեխանիկներին, տրակտորային բրիգադների բրիգադիրներին ու տրակտորիստներին, սովխոզների դիրեկտորներին, ավագ գյուղատնտեսներին, ավագ մեխանիկներին Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհվում է կամ նրանք ՍՍՌՄ



շքանշաններով ու մեդալներով պարգևատրվում են հետևյալ պայմանները պարտադիր կերպով կատարելու դեպքում.

Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհվում է, եթե բերքատվության պլանը գերակատարված է առնվազն 10 տոկոսով, իսկ Լենինի շքանշանով, Աշխատանքային Կարմիր Դրոշի շքանշանով և «Աշխատանքային արիության համար» ու «Աշխատանքային գերազանցության համար» մեդալներով պարգևատրվում են, եթե բերքատվության պլանը կատարված է՝

օղակի կողմից—այն կուլտուրայի մնացած ցանքատարածության վրա, որի համար կատարվում է պարգևատրումը, և, բացի դրանից, օղակին ամրացված մյուս բոլոր կուլտուրաների ամբողջ ցանքատարածության վրա.

դաշտավարական բրիգադի, կոլխոզի, սովխոզային բաժանմունքի (ֆերմայի), սովխոզի կողմից՝ այն կուլտուրայի մնացած ցանքատարածության վրա, որի համար կատարվում է պարգևատրումը, բոլոր հացահատիկային կուլտուրաների և Հրամանագրով նախատեսված մյուս կուլտուրաների համար.

եթե կոլխոզը կատարել է պարտադիր հանձնումներն ու կոնտրակտացիաները գյուղատնտեսական արտադրանքի բոլոր տեսակների գծով և հանձնել է ՄՏԿ-ի աշխատանքի դիմաց հասանելիք բնավճարը, իսկ սովխոզը կատարել է պետության գյուղատնտեսական մթերքներ հանձնելու պլանը.

եթե կոլխոզը, սովխոզը իրեն ապահովել է բոլոր կուլտուրաների սերմացուով, առաջիկա տարվա ցանքի ամբողջ պահանջի չափով.

տրակտորային բրիգադների բրիգադիրների, սովխոզների բաժանմունքների (ֆերմաների) տրակտորիստների համար՝ եթե նրանք կատարել են բրիգադայի համար սահմանված տրակտորային աշխատանքների պլանը.

տրակտորիստների համար՝ եթե տրակտորիստը տրակտորային բրիգադայում տվել է միջին արտադրողականությունից առնվազն 25 տոկոս ավելի.

կոլխոզների, սովխոզների առանձնապես աչքի ընկած աշխատողները Լենինի շքանշանով, Աշխատանքային Կարմիր Դրոշի



շքանշանով, «Աշխատանքային արիության համար» և «Աշխատանքային գերազանցության համար» մեդալներով պարգևատրվում են նայած նրանց մասնակցության բարձր բերք ստանալու գործին:

Ստալինյան նոր հնգամյակի երրորդ վճռական տարվա գարնանացանքի եռուն օրերն են կոլխոզային գյուղում: Ով ուզում է արժանանալ բարձր կոչման, բարձր պարգևի, նա պետք է հենց այժմվանից արագ և բարձր որակով կատարի գարնանային դաշտային աշխատանքները, բարձր բերք ստանալու, մեր երկրում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար:

———

# Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՕՐՎԱ ԱՌԹԻՎ

Ի. ՍՏԱԼԻՆ.— Սովետական Միության Հայրենական Մեծ Պատերազմի մասին: *Հայպետհրատ, Երևան, 1946 թ.*:

ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆ. Համառոտ կենսագրություն: *Հայպետհրատ, Երևան, 1947 թ.*:

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում, 1946 թ. փետրվարի 9-ին: *Հայպետհրատ, Երևան, 1946 թ.*:

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ.— Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 30-ամյակը: *Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1947 թ. նոյեմբերի 6-ին: «Սովետական Հայաստան», 7 նոյեմբերի 1947 թ.*:

Ա. Ա. ԺԴԱՆՈՎ.— Միջազգային դրության մասին: *Զեկուցում մի քանի կոմպարտիաների ներկայացուցիչների 1947 թ. սեպտեմբերի վերջերին Լեհաստանում տեղի ունեցած ինֆորմացիոն խորհրդակցությանը: «Սովետական Հայաստան», 1947 թ. № 250*:

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԿԵՂԾԱՐԱՐՆԵՐԸ: *(Պատմական տեղեկանք): «Սովետական Հայաստան», 11, 12, 13, 17, 19 և 20 փետրվարի, 1948 թ.*:

---

